Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 10 ՄԱՅԻՍ 1952

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78



# Ի՞ՆՉ ԿՏԱՆ ՄԵՐ ԵՐԿՐԻՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՄԵԾ ԿԱՌՈՒՑՈՒՄՆԵՐԸ

### Թվեր և փաստեր

*Մեր Հայրենիքի աշխատավորները բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, ընկեր Ստալինի առաջնորդությամբ բուռն խանդավառությամբ առաջ են տանում կոմունիզմի մեծ կառուցումների շինարարությունը: Այդ հոյակապ և վիթխարի կառուցումների շինարարության թափի մեջ է՛լ ավելի վառ կերպով դրսևորվում են սոցիալիստական հասարակակարգի առավելությունները, նրա կենսունակությունը, հզորությունն ու անսասանությունը: Մեր դարաշրջանի այդ ամենամեծ կառուցումներով սովետական ժողովուրդը ստեղծում է կոմունիզմի նյութա-տեխնիկական հզոր բազա:*

✪ *Սվիր գետի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը դիտելիս ամերիկացի Խ. Կուպերը մեր շինարարներին ասել է. «Եթե դուք այստեղ կառուցեք հիդրոէլեկտրակայան, բոլորդ կծերանաք այդ աշխատանքում»:*

Միստեր Կուպերը շփոթել է. նրա այդ դիտողությունը վերաբերում է ոչ թե սովետական, այլ իր հայրենակից շինարարներին, որոնք ոչ միայն ծերանում, այլև չեն տեսնում իրենց աշխատանքի արդյունքը: Այդ մասին են խոսում փաստերը: Ամերիկացիները Պանամայի ջրանցքը, որի երկարությունը 81 կիլոմետր է, կառուցել են 35 տարում, Բոուլդեր-Դեմ հիդրոէլեկտրակայանը Կոլորադո գետի վրա, որի հզորությունը կիսով չափ պակաս է միայն Կույբիշևյան հիդրոէլեկտրակայանից, 40 տարի է ինչ կառուցվում է: Ամերիկյան մյուս խոշոր հիդրոէլեկտրակայանը՝ Վաշինգտոն քաղաքի մոտ, Կոլումբիա գետի վրա, 20 տարի է ինչ կառուցվում է և դեռ հայտնի չէ թե երբ է ավարտվելու: Անգլիական շինարարները դանդաղկոտությամբ հետ չեն մնում իրենց յանկիներից: Այսպես, օրինակ, Նեղոսի վրա Ասամի ամբարտակը անգլիացիները կառուցել են 68 տարում, բայց դեռ լրիվ չեն ավարտել: Սուեզի ջրանցքը կառուցել են 10 տարում և այլն:

✪ Իրենց մասշտաբներով և տեմպերով կոմունիզմի կառուցումները հավասարը չունեն համաշխարհային տեխնիկայի ասպարեզում: Սովետական մարդիկ 5—7 տարում կառու-



ցելու են 5 հզոր հիդրոէլեկտրակայան՝ չորս միլիոն 210 հազար կիլովատ ընդհանուր կարողությամբ, 9 խոշոր ամբարտակ՝ 35 կիլոմետր երկարությամբ, ավելի քան 4 հազար կիլոմետր երկարություն ունեցող մագիստրալային ջրատար և միացնող ջրանցք և 8 խոշոր ջրամբար:

✪ Վոլգա-Դոն ջրանցքի գործարկումով կլուծվեն տնտեսական նշանակություն ունեցող մի շարք խնդիրներ: Նախ՝ Վոլգա-Դոն ջրանցքը կմիացնի Սպիտակ, Բալթիկ ու Կասպից ծովերը Ազովի և Սև ծովերի հետ և այսպիսով կստեղծվի հզոր ջրային ճանապարհների ցանց: Երկրորդ՝ Դոնի ջրերով կոռոգվի Ստալինգրադի և Ռոստովի մարզերի 750 հազար հեկտար և ջրովի կդարձվի 2 միլիոն հեկտար հողամաս:

Հաշված է, որ այդ հողերի ոռոգման շնորհիվ ցորենի բերքատվությունը մեկ հեկտարից կկազմի 35—40 ցենտներ: Այդ նշանակում է, որ 750 հազար հեկտարի վրա հեկտարից 35 ցենտներ միջին բերք ստանալու դեպքում մեր երկիրը լրացուցիչ կստանա 26 միլիոն 250 հազար ցենտներ ցորեն:

✪ Մարդկությունը հազարամյակների ընթացքում կարողացել է անապատներից և կիսաանապատներից մշակելի դարձնել ըն-

ղամենը 90 միլիոն հեկտար հողամաս։ Այդ թվում ամերիկյան մեծախոսները վերջին 100 տարում ոռոգելի և ջրովի են դարձրել միայն 8 միլիոն հեկտար։

Սովետական մարդիկ որոշել են 5—7 տարում ոռոգելի և ջրովի դարձնել 28 միլիոն հեկտար հողամաս։ Հողային այդ տարածության վրա կարող են տեղավորվել Անգլիան, Բելգիան, Հոլանդիան, Դանիան և Շվեյցարիան։ Կոմունիզմի մեծ կառուցումների շրջանում եղած հողերի ոռոգումն ու ջրովի դարձնելը հնարավորություն կտա ցորենի տարեկան բերքը ավելացնել 500 միլիոն փթով, բամբակինը՝ 3 միլիոն տոննայով, բրնձինը՝ 30 միլիոն փթով, շաքարի ճակնդեղինը՝ 6 միլիոն տոննայով։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը կավելանա 2 միլիոն գլխով, ոչխարներինը՝ 9 միլիոն գլխով։ Գյուղատնտեսական արտադրանքի միայն այդ լրացուցիչ քանակը բավական է կերակրելու և հագցնելու 100 միլիոն մարդ։

✪ Հայտնի է, որ մեկ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիան բավական է կատարելու հետևյալ աշխատանքներից որևէ մեկը, փորել և հանքահորից գետնի երես դուրս բերել 75 կիլոգրամ ածուխ, գլանել 50 կիլոգրամ մետաղ, պատրաստել 2 զույգ կոշիկ, գործել



10 մետր բամբակյա գործվածք, եփել և ձևավորել 42 կիլոգրամ շաքար։ Այստեղից հասկանալի է, թե որպիսի վիթխարի նշանակություն է ունենալու մեր Հայրենիքի տնտեսական հզորության հետագա վերելքի և սովետական ժողովրդի բարեկեցության աճման համար էլեկտրաէներգիայի արտադրության ավելացումը տարեկան ավելի քան 22 միլիարդ 500 միլիոն կիլովատ-ժամով, որը 18 անգամ շատ է, քան Անգլիայի բոլոր հիդրոէլեկտրակայանների արտադրած էներգիան։

Այս քանակի էլեկտրաէներգիան փոխարինում է մոտ 50 միլիոն մարդու աշխատանք։ Միայն Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանների էլեկտրականության օգտագործումը մեր երկրին հնարավորություն կտա տնտեսել տարեկան 20—25 միլիոն տոննա ածուխ և տորֆ, մի քանակություն, որի փոխադրման համար կպահանջվի 20 հազար երկաթուղային գնացք։

✪ Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանները ամեն տարի մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվային կտան 10 միլիարդ 100 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Այդքան բարձր լարվածություն ունեցող հոսանքը 900 կիլոմետր հեռավորությունից հաղորդելը, աշխարհում կիրառ-

վելու է առաջին անգամ։ Մոսկվայի էլեկտրահամակարգը կապվելով Վոլգայի էլեկտրասիստեմի հետ, իր մեծությամբ կդառնա աշխարհում ամենահզորը։ Մոսկվան էժան էլեկտրաէներգիայի առատության շնորհիվ կդառնա է՛լ ավելի բարեկարգ և գեղեցիկ։ Մոսկվայի հանգույցի բոլոր երկաթուղիները, մայրաքաղաքի բոլոր մերձավոր և հեռավոր երկաթուղային մատույցները կէլեկտրիֆիկացվեն։ Մի քանի անգամ կավելանա էլեկտրաէներգիայի ծախսումը կոմունալ և կենցաղային կարիքների համար։ Հնարավորություն կստեղծվի հիմնովին ավտոմատիզացիայի ենթարկել մայրաքաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները, զարկ կտրվի էլեկտրամետաղամշակմանը, ավելի լայնորեն կկիրառվեն տեխնոլոգիական նոր, առաջավոր պրոցեսներ։

✪ Հսկա էլեկտրակայանների գործարկումից հետո, մեր երկիրը տարեկան կստանա ավելի քան 22 միլիարդ 500 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, որը երկու ու կես անգամ կգերազանցի ԳՈԷԼՌՈ-ի պլանով նախատեսված էլեկտրաէներգիայի քանակին։ Այդ էներգիան բաշխվելու է հետևյալ կերպ. Մոսկվան կստանա 10,1 միլիարդ կիլովատ-ժամ, Կենտրոնական սևահողային



գոտին՝ 1,2 միլիարդ, Պովոլժյեն մոտավորապես 5,2 միլիարդ, իսկ 4 միլիարդ կիլովատ-ժամ կգնա գյուղատնտեսության, ոռոգման կազմակերպման և էլեկտրիֆիկացիայի համար։

✪ Ստալինգրադի հիդրոէլեկտրակայանի ամբարտակը կունենա 5 կիլոմետր լայնություն, որը Վոլգայի ջուրը կբարձրացնի 26 մետր և կառաջանա վիթխարի ջրամբար։ Այդ ջրամբարը ջուր կմատակարարի Մերձկասպյան շրջանների տափաստանային և կիսատափաստանային հողերի համար։ Վոլգա և Ուրալ գետերի միջև, Սարպինսկի դաշտավայրում, Սև հողերում և Նողայական տափաստանում ջրովի կդարձվի և կոռոգվի մոտ 13 միլիոն հեկտար հող։ Ոռոգվող հողերում կաճեն բամբակ, ցորեն, բրինձ և բանջարանոցային կուլտուրաներ։ Մեծ չափով կզարգանա անասնապահությունը։ Այդ վայրերը կդառնան մեր երկրի ամենահարուստ շրջաններից մեկը։

✪ Արագ թափով կառուցվում է Նոր Կախովկա քաղաքը։ Երեք ամսվա ընթացքում հարահոս մասնատված մեթոդով կառուցվել է 150 բնակելի տուն։ Այդ մեթոդը լայն կիրառում է ստացել նաև Հարավ-Ուկրաինական և Հյուսիս-Ղրիմյան ջրանցքների շինա-

բարների Սնիգիրևկա, Վասիլևկա և Ջանկոյ ավաններում։

✪ Կախովկայի և Մոլոչնայա գետի վրա կառուցվող հիդրոէլեկտրակայանները հնարավորություն կտան է՛լ ավելի բարձրացնել գյուղատնտեսության մեքենայացման մակարդակը Ուկրաինայի հարավում և Ղրիմի հյուսիսային շրջաններում։ Այդ էլեկտրակայանների էներգիան հնարավորություն կտա ավելի լայն մասշտաբներով հերկ կատարելու էլեկտրաքարշ տրակտորներով։ Էլեկտրականությունը լայնորեն օգտագործվելու է նաև հացահատիկի կալսման, կերի մշակման և այլ աշխատանքներում։

✪ Հարավ-Ուկրաինական ու Հյուսիս-Ղրիմյան ջրանցքները ջուր կմատակարարեն Ուկրաինական ՍՍՌ Խերսոնի, Զապորոժյեի, Նիկոլաևի և Դնեպրոպետրովսկի մարզերի, ինչպես նաև Ռուսաստանի ՍՖՍՌ Ղրիմի մարզի չորային շրջաններին։ Այդ վիթխարի իրրիգացիոն սիստեմը հնարավորություն կտա ոռոգել և ջրովի դարձնել 3,2 միլիոն հեկտար հողային տարածություն։ Այդ տարածությունից 200 հազար հեկտարը Նիժնի-Դնեպրյան անբերրի ավազուտներն են, որոնց յուրացումից հետո երկիրը լրացուցիչ կստանա տարեկան 500 հազար ցենտներ



մրգեղեն, 900 հազար ցենտներ բանջարեղեն և 3 միլիոն ցենտներ խաղող։

✪ Ամու-Դարյա գետը սկիզբ է առնում Պամիրո-Ալայի ամենաբարձր լեռնաշղթաների՝ երկրագնդի ամենամեծ սառցադաշտերից։ Ամու-Դարյան տիղմով ավելի է հարուստ, քան Նեղոս ու Գանգես գետերը։ Հաշվումները ցույց են տվել, որ եթե ընդունել միջին հաշվով ոռոգման նորմա 6400 խորանարդ մետր ջուր մեկ հեկտար հողամաս ջրելու համար, ապա Ամու-Դարյան այդ հեկտարին կտա 1.460 կիլոգրամ կիր, 417 կիլոգրամ կալիում և 37 կիլոգրամ ֆոսֆոր։ Իսկ Նեղոսը մեկ հեկտար ցանքսի համար բերում է 293 կիլոգրամ կիր, 47 կիլոգրամ կալիում և 27 կիլոգրամ ֆոսֆոր։ Միջին հաշվով Ամու-Դարյան 5 անգամ ավելի բնական հանքային պարարտանյութ կտա մեկ հեկտար հողամասի համար, քան Նեղոսը։

✪ Գլխավոր-Թուրքմենական ջրանցքը սկիզբ կառնի Թախիա-Տաշի ամբարտակից և կհոսի դեպի արևմուտք 400 կիլոմետր երկարություն ունեցող արհեստական ջրանցքով։ Հասնելով Ջարիշլիի ջրհորներին, կըթափվի Ուզբոյի պահպանված հին հունը, որի երկարությունն ավելի քան 500 կիլոմետր է, լայնությունը մինչև 6 կիլոմետր։ Այնու-

հետև ջուրը կթափվի Կել-Կորի աղուտները, որտեղից երկաթուղու շէին զուգահեռ կանցնի 200 կիլոմետր երկարություն ունեցող արհեստական նավարկելի շլյուզային ջրանցքով, մինչև Կրասնովոդսկի ծոցը։ Գըլխավոր Թուրքմենական ջրանցքի երկարությունը կլինի 1.100 կիլոմետր։ Բացի դրանից, կառուցվելու են 1200 կիլոմետր երկարությամբ հեռատար ջրանցքներ, իսկ ամբողջ իրրիգացիոն ցանցը կկազմի 50 հազար կիլոմետր։

✪ Գլխավոր-Թուրքմենական ջրանցքը առաջին հերթին ոռոգելու է մեկ միլիոն 300 հազար հեկտար տարածություն, իսկ հետագայում ավելի քան երեք միլիոն հեկտար։ Ջրանցքի շահագործումից հետո Թուրքմենիայի ոռոգվող հողերի տարածությունը կավելանա ավելի քան երկու և կես անգամ, Կարա Կալպակիայի ԱՍՍՌ-ում՝ ավելի քան 2 անգամ։ Անապատները կդառնան ծաղկած այգիներ։ Հազարավոր հեկտարների վրա կաճեն բամբակ, ցորեն, ջութ և մոտ 200 տեսակի արևադարձային բույսեր։ Պլանտացիաներում կաճեն փյունիկյան արմավենի, ձիթապտուղներ, նուռ, թուզ, արմավ, եթերատու, կաուչուկատու բույսեր, շաքարեղեգ և այլն։



✪ Միայն Թուրքմենիայի բամբակի ցանքատարածությունը մեկ ու կես անգամ մեծ կլինի Արգենտինայի, Իրանի և Մեքսիկայի բամբակի ցանքատարածություններից, միասին վերցրած։ Այդտեղ բամբակագործական նոր բազաները տարեկան կտան 2 միլիոն տոննա ընտիր բամբակ, որը մոտ երեք անգամ կգերազանցի մինչռևոլյուցիոն Ռուսաստանում ստացվող ամբողջ բամբակի քանակը։ Բամբակի այդ քանակից կստացվի 5 միլիարդ 500 միլիոն մետր գործվածք, որից ՍՍՌՄ-ի յուրաքանչյուր բնակչին լրացուցիչ կընկնի մոտ 30 մետր։

✪ Գլխավոր—Թուրքմենական ջրանցքի գործարկումից հետո, միայն Խորեզմի օազիսում կստեղծվեն ավելի քան հազար էլեկտրիֆիկացված նոր խոշոր կոլտնտեսություններ, մի քանի տասնյակ խոշորագույն սովխոզներ։ Այստեղ երևան կգան 35 նոր վարչատնտեսական շրջաններ, 70 մեքենա-տրակտորային կայան։ Ամու-Դարյայի ստորին հոսանքի շրջանում կկառուցվեն բամբակազտիչ, ձեթի, ճարպի, հիդրոլիզի և տեքստիլ արդյունաբերության ավելի քան 50 խոշոր ձեռնարկություններ։

✪ Գլխավոր—Թուրքմենական ջրանցքը կնպաստի Թուրքմենական ռեսպուբլիկայի

*ինդուստրիալ զարգացմանը։ Այդ ջրանցքը ոչ միայն կոռոգի և ջրովի կդարձնի միլիոնավոր հեկտար դաշտեր, այլև խմելու ջուր կմատակարարի քաղաքներին և գյուղերին, գործարաններին և ֆաբրիկաններին։ Արագ կերպով կզարգանա նավթահանույթը, նավթամշակումը։ Կրասնովոդսկ քաղաքը կդառնա Արևմտյան Թուրքմենիայի կոմպլեքսային նավթամշակման խոշոր կենտրոն։ Նեբիդ-Դաղ քաղաքին կմատակարարվի Ամու-Դարյայի ջուրը, որը հնարավորություն կտա է՛լ ավելի զարգացնել նավթարդյունաբերությունը։ Կզարգանա Արևմտյան Թուրքմենիայի ածխային բազան, կսկսվի Ուստ-Ուրտի օգտակար հանածոների լայն մշակումը։*

*Միջին Ասիայի միակ տրանզիտային նավարկելի մագիստրալը Ամու-Դարյա գետն է՝ Չարջոու քաղաքից մինչև գետաբերանը ձգվող տեղամասում։ Գլխավոր-Թուրքմենական ջրանցքը Թուրքմենիայի և Կարա-Կալպակիայի հեռավոր շրջանները իրար հետ կկապի ջրային տրանսպորտով։ Այդ ջրանցքով Միջին Ասիան Կասպից ծովով կկապվի Սև, Ազով, Բալթիկ և Սպիտակ ծովերի հետ, որը հզոր տնտեսական նշանակություն կունենա մեր երկրի համար։*



ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

## ԻՆՉՊԵՍ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏԵՑԻ ԵՎ ԱՆՑԿԱՑՐԻ ՑԵԽԱՅԻՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՇՎԱՐԿԻ ԱՐՄԱՏԱՎՈՐՄԱՆԸ ՆՎԻՐՎԱԾ ԶՐՈՒՅՑԸ

*Երևանի «Ավտոդետալ» գործարանի պարտիական կազմակերպության ագիտկոլեկտիվում վերջերս ինձ հանձնարարվեց տերմիկական ցեխում, որտեղ ես աշխատում եմ որպես ինժեներ և ագիտատոր, զրույց անցկացնել ցեխային տնտեսական հաշվարկի արմատավորման հարցերի շուրջը։ Հայտնի է, թե տնտեսական հաշվարկի արմատավորումը ինչպիսի հսկայական նշանակություն ունի ձեռնարկության շահութաբեր աշխատանքն ապահովելու գործում։ Այդ կարևոր և հետաքրքիր թեման շատ է հուզում մեր ցեխի բանվորներին, ինժեներներին ու տեխնիկներին և ահա թե ինչու։*

*Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի էկոնոմիկայի սեկտորի օգնության շնորհիվ մեր գործարանում սկիզբ է դրվել ցեխային տնտեսական հաշվարկին։ Գործարանի ամենախոշոր՝ մեխանիկական № 1,*

ինչպես նաև № 3 ցեխերի կոլեկտիվները, լայն նախապատրաստական աշխատանքից հետո, արդեն անցել են ցեխային տնտեսական հաշվարկի և այդ ուղղությամբ հիանալի արդյունքներ են ձեռք բերել։ Մեր ցեխում բանվորները հաճախ են ինձ հարցնում, թե ե՞րբ են հաշվարկի անցնելու նաև իրենք։ Ուրեմն, հարցը հուզում է ցեխի աշխատողներին։

Ստացված հանձնարարությունը ժամանակին կատարելու, ունկնդիրների հետաքրքրությունը լիովին բավարարելու համար սկսեցի խնամքով նախապատրաստվել զրույցի։ Հանգամանորեն ուսումնասիրեցի տնտեսական հաշվարկի մասին ընկեր Ստալինի արտահայտած մտքերը, ինչպես նաև տնտհաշվարկի կիրառմանը վերաբերող վերադաս օրգանների որոշումներն ու ցուցումները։ Ես լավ գիտեի, որ զրույցի ընթացքում ինձ շատ հարցեր կտան, մասնավորապես այն մասին, թե ինչ արդյունքի են հասել արդեն տնտեսական հաշվարկի անցած մեր գործարանի ցեխերի կոլեկտիվները։ Դրա համար պլանային բաժնից վերցրի համապատասխան թվեր ու փաստեր, զրույցի ընթացքում հրապարակելու համար։

Նախապատրաստական աշխատանքի ժա-



մանակ ինձ հայտնի դարձավ, թե արտադրական ինչպիսի մեծ հաջողությունների էին հասել մեխանիկական № 1 և № 3 ցեխերի շատ բրիգադաներ ու առանձին բանվորներ, տնտեսական հաշվարկը հետևողականորեն կիրառելու շնորհիվ։

Բոլորին հայտնի է, թե որքան մեծ է առաջավոր փորձի ուժը։ Նկատի ունենալով այդ, ուսումնասիրեցի այն անվանի ստախանովականների ձեռք բերած հաջողությունները, որոնք տնտեսական հաշվարկի անցնելուց հետո սկսել են աշխատել նոր, մեզ համար ուսանելի մեթոդով։

Այսպիսով, զրույցը սկսելուց առաջ, իմ տրամադրության տակ կային բավական հարուստ նյութեր։ Սկզբում ես ունկնդիրներին հաղորդեցի տնտեսական հաշվարկի մասին ընկեր Ստալինի ասույթները, նշելով, որ տնտեսական հաշվարկի կիրառումը ընկեր Ստալինը համարում է մեր արդյունաբերության զարգացման կարևորագույն պայմաններից մեկը։ Հարկավոր է իսպառ վերացնել արտադրության մեջ շռայլումներն ու կորուստները, ապահովել յուրաքանչյուր ֆաբրիկայի, յուրաքանչյուր գործարանի շահութաբեր աշխատանքը։ Զրույցի ընթացքում

տնտեսական հաշվարկի կենսագործման համար մեջ բերեցի ընկեր Ստալինի հետևյալ ցուցումը.

«Իսկ ի՞նչ է պահանջվում սրա համար։ Անտնտեսության ոչնչացում, արդյունաբերության ներքին միջոցների մոբիլիզացիա, տնտհաշվարկի արմատավորում և ամրացում մեր բոլոր ձեռնարկություններում, ինքնարժեքի սիստեմատիկ իջեցում, ներարդյունաբերական կուտակման ուժեղացում արդյունաբերության առանց բացառության բոլոր ճյուղերում»։

Ընկեր Ստալինի ցուցումները հետևողականորեն կենսագործելու շնորհիվ մեր արդյունաբերության աշխատողները արդեն հսկայական հաջողությունների են հասել։ Այժմ կատարելագործվում են տնտհաշվարկային աշխատանքի մեթոդները։ Գործարանի մասշտաբով այն կիրառելուց հետո, այժմ շատ ձեռնարկություններում արմատավորվում է նաև ներգործարանային՝ ցեխային տնտեսական հաշվարկը։

Ես օրինակ եմ բերում մեր գործարանից. № 1 մեխանիկական ցեխը, որ 1951 թվականի վերջին եռամսյակում, այսինքն տրնտեսական հաշվարկի անցնելուց հետո, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի հա-



մեմատությամբ, արտադրանքի թողարկումն ավելացրեց մոտ 35 տոկոսով։ Բացի դրանից, ցեխի կոլեկտիվը տնտեսեց մեծ քանակությամբ հումք, օժանդակ նյութեր, գործիքներ և էլեկտրաէներգիա։ Այդ բոլորի շնորհիվ, զգալի չափով իջավ արտադրանքի ինքնարժեքը, բարելավվեց արտադրանքի որակը։ Ապա ես հաղորդում եմ առանձին ստախանովական բանվորների ձեռք բերած հաջողությունները։ Այսպես, հումքի ծախսման գործում դիմացկունությունը վերացնելու, նյութերը առավել խնայողությամբ օգտագործելու շնորհիվ № 3 մեխանիկական ցեխի ստախանովական Գ. Հակոբյանը յուրաքանչյուր ամսվա ընթացքում տնտեսում է 300—400 կիլոգրամ յուղ, մեծ քանակությամբ կտրող գործիքներ։

Տնտեսական հաշվարկի անցնելուց հետո, № 1 և № 3 ցեխերում բացվել են բանվորների անվանական հաշիվներ։ Այդ անվանական հաշիվներում ցույց է տրվում, թե որ բանվորը ինչպես է ծախսում հումքը, նյութերը, գործիքները, ինչքան արտադրանք է տալիս ամսվա ընթացքում։ Անվանական հաշիվները պարզ ցույց են տալիս բանվորի աշխատանքի պատկերը, արդյունքը։ Նկատի ունենալով այդ, յուրաքանչյուր բանվոր

պայքարում է կորուստների, շռայլումների դեմ, ավելի շատ խնայողություն անելու համար։

Այդ հարցերի մասին ես տարբեր առիթներով խոսել էի մի շարք բանվորների հետ։ Եվ ահա զրույցի ընթացքում հանդես եկան առանձին ստախանովականներ և նշեցին, թե մեր ցեխում ինչ հնարավորություններ կան խնայողության ռեժիմ կիրառելու, արտադրական կորուստները նվազեցնելու ուղղությամբ։ Զրույցի ժամանակ, բրիգադիր Գ. Գասպարյանը, ստախանովական բանվոր Հ. Ջինջինյանը, էլեկտրիկ Ա. Խաչատրյանը և ուրիշներ հանդես բերին խրախուսելի նախաձեռնություն, ուղիներ նշելով մեքենայական յուղի, հատուկ ածուխի, էլեկտրաէներգիայի ծախսումը կրճատելու մասին։ Զրույցից հետո նրանք կոնկրետ առաջարկություններ ներկայացրին ցեխի ղեկավարությանը այդ ուղղությամբ։ Էլեկտրիկ Ա. Խաչատրյանը տեխնիկապես հիմնավորեց, որ եթե վառարանների մեջ եղած բարակ թիթեղները փոխարինվեն համեմատաբար հաստ թիթեղներով, ապա վառարանի ջերմատվության կարողությունը կբարձրանա, իսկ էլեկտրաէներգիայի ծախսման չափը կմնա նույնը։ Հետևապես, նույն ժամանակա-



միջոցում ավելի շատ դետալներ ենթարկելով ջերմային մշակման, դրանով իսկ ցեխի կոլեկտիվը մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա կտնտեսի։ Այդպես էլ ստացվեց։ Այդ առաջարկությունը ընդունվեց և արմատավորվեց արտադրության մեջ։ Այժմ արդեն ջերմային վառարաններում յուրաքանչյուր հերթափոխության ընթացքում 20—25 տոկոսով ավելի շատ դետալներ են ջերմային մշակման ենթարկվում։

Ցեխային տնտեսվարկի արմատավորմանը նվիրված այդ զրույցից հետո, արտադրության մեջ ներդրվեցին ռացիոնալիզատորական նաև ուրիշ առաջարկություններ։ Այսպես, մեր ցեխում առանձին մասեր հատուկ ածուխով մշակելու համար, դասավորում էինք արկղներում, իսկ արկղները ծածկում էինք ցեխով։ Տեխնոլոգիական այդպիսի ռեժիմի պատճառով մեծ քանակությամբ ածուխի կորուստ էր տեղի ունենում։ Մի շարք ստախանովականների առաջարկությամբ այդ ռեժիմը փոխվեց։ Այժմ այդ արկղները, ծածկվում են ոչ թե ցեխով, որի հետ ածուխը խառնվելով փչանում էր, այլ հատուկ կափարիչով։ Դրա շնորհիվ էլ ածուխի կորուստ չի լինում։

Ցեխի ստախանովականների եռանդուն

աշխատանքի շնորհիվ մենք աչքի ընկնող հաջողություններ ենք ձեռք բերել նաև մեքենայական յուղի տնտեսման ուղղությամբ։ Առաջներում մշակվող մասերը յուղի բաքերից դուրս էին բերվում առանձին-առանձին և յուղի զգալի կորուստ էր տեղի ունենում։ Արտադրական այդ պրոցեսը ստախանովականների առաջարկությամբ ավտոմատացվեց և փոխանակ մասերը առանձին-առանձին բաքից հանելու, այժմ հանվում են մի քանի տասնյակներով միանգամից։ Դրա շնորհիվ յուղի կորուստը հասցված է նվազագույնի։ Արդյունքն այն է եղել, որ Ս. Սարգսյանի, Ի. Բերյոզկայի և ուրիշների բրիգադաները այժմ մեքենայական յուղը տնտեսում են 15—20 տոկոսով։

Ցեխային տնտեսական հաշվարկի արմատավորմանը նվիրված այդ զրույցը ցույց տվեց, թե ինչպիսի մեծ արդյունքի կարելի է հասնել ագիտացիայի յուրաքանչյուր ժամը հաջող նախապատրաստելու, ունկնդիրների քաղաքական և աշխատանքային ակտիվությունը բարձրացնելու դեպքում։

Մեր ցեխի կոլեկտիվի առջև այժմ խնդիր է դրված՝ արագացնել և ավարտել բոլոր նախապատրաստական աշխատանքները՝ տնտեսական հաշվարկի անցնելու համար։ Այդ



գործում արդեն աչքի ընկնող աշխատանք են կատարել նաև ցեխի ագիտատորները։ Ոչ միայն ես, այլև ագիտատորներ Ա. Խաչատրյանը, Ա. Ասմանգուլյանը և ուրիշներ, նույնպես աշխույժ զրույցներ են անցկացրել այդ թեմայի շուրջը, բանվորներին լայնորեն օգնելով նյութերը, հումքը, գործիքները և էլեկտրաէներգիան խնայողությամբ օգտագործելու, արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու համար։

Տնտեսական հաշվարկի անցնելու նախապատրաստական շրջանում մեր ցեխի ագիտատորների առջև լուրջ խնդիրներ են դրված՝ խնայողության ռեժիմը արմատավորել բոլոր աշխատամասերում ու բրիգադներում, հասնել այն բանին, որ յուրաքանչյուր բանվոր սովորի ոչ միայն առանձին օրեր, այլ մշտապես աշխատի խնայողաբար, լայն պայքար ծավալի կորուստները կանխելու, արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու համար։

Երևանի «Ավտոդետալ» գործարանի ագիտատորները ակտիվորեն պայքարում են այդ խնդիրների կենսագործման համար։

Ն. ՆԱԶԱՐԵԹՅԱՆ
«Ավտոդետալ» գործարանի տերմիկական ցեխի ագիտատոր, ինժեներ

---

# ԻՆՉՊԵՍ ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼ ԲԱՄԲԱԿԵՆՈՒ ՄՇԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*Ժողովրդական տնտեսության համար հըսկայական նշանակություն ունեցող բամբակի կուլտուրայի բարձր բերքատվության համար անհրաժեշտ է մասնագիտական մշակություն և հոգատար խնամք։*

*Բամբակենու ցանքը նախատեսված կանոնների համաձայն ավարտելուց և ջրելուց հետո, պետք է կազմակերպել խնամքը այնպես, որ հնարավոր լինի բամբակի բերքը մեկ հեկտարից այս տարի հասցնել 30—40 ցենտների։ Այդ միանգամայն հնարավոր է, եթե խնամքի հիմնական միջոցառումները կատարվեն ժամանակին, լիովին և որակով։ Միջոցառումների շարքին են պատկանում նոսրացումը, դաշտը մշտապես փուխր և մաքուր դրության մեջ պահելը, քաղհանը և կուլտիվացիան, ամառային սնուցումները, ոռոգման չափի և քանակի կիրառումը։ Բամբակենու մշակության վճռական միջոցառումներ են հանդիսանում նաև*



*պայքարը վնասատուների դեմ, ծերատումը, ցանքի նախապատրաստումը մեքենայացված հավաքի համար և այլն։*

*Ցանքի ժամանակաշրջանում եկող անձրևները առաջացնում են հողի մակերեսի կեղևակալում, որը մեծ չարիք է բամբակենու նորմալ աճի և զարգացման համար։ Հողի վերին շերտի կեղևը փխրացնելու համար պետք է օգտագործել ՄՏ կայանների տրակտորային աստղաձև փոցխերը և այլ գործիքներ։*

*Որոշ կոլխոզներում բամբակի ցածր բերքի հիմնական պատճառներից մեկն է հեկտարի ոչ լիարժեք լինելը։ Այդ նշանակում է, որ մեկ հեկտարի վրա փոխանակ միջին հաշվով 100—150 հազար բամբակենու թուփ ապահովելու, աճեցվում է միայն 40—50 հազար թուփ, և ըստ այնմ էլ ստացվում է հնարավոր բերքի 50 տոկոսը, կամ ավելի պակաս։ Այդ թերությունը վերացնելու, հեկտարները լիարժեք դարձնելու համար ցանքի շարքերում զանազան պատճառների հետևանքով մնացած բաց տարածությունները անհապաղ պետք է լրացնել, նախօրոք թրջած սերմերը տնկելով միայն խոնավ շերտում։ Ցանքի խտությունը սահմանելիս, պետք է հաշվի առնել հողի բերրիությունը։*

Անընդանյութերով հարուստ հողերում խիտ ցանքերի դեպքում ցողունները ձգվում են, լույսի թափանցումը դեպի բույսերի ստորին մասերը պակասում է, թուլանում է բույսերի կանոնավոր սնունդը, որի հետևանքով թափվում են նրանց ստորին մասերում գտնվող ամենաարժեքավոր պտղօրգանները։ Դրա հետ միաժամանակ բամբակենու վերին մասերում գտնվող կնգուղները ուշ են հասունանում, տալով վատորակ բերք։ Այդ բանից խուսափելու համար ցանքի խտությունը նման հողերում պետք է պակասեցնել, դրան հակառակ, խտությունը պետք է ուժեղացնել համեմատաբար պակաս բերրի հողերում։ Ցանքի խտության չափը ճիշտ կերպով որոշելու համար, բամբակենու ցանքատարածությունները, ելնելով հողի բերրիությունից, ագրոնոմի մասնակցությամբ բաժանում են ըստ խմբերի։ Ելնելով հողի բերրիությունից, մեկ հեկտարի վրա պետք է թողնել 100—150 հազար թուփ։

Գիտահետազոտական հիմնարկների ուսումնասիրություններից պարզվել է, որ պետք է մեկ բնում թողնել մեկական թուփ, քանի որ այդ դեպքում բույսերը ավելի շատ լույս են ստանում, հետևաբար ուժեղանում է սնունդը, ավելի տաքություն են



ստանում՝ ուժեղանում է արմատային սիստեման և ավելի շուտ է տեղի ունենում կընգուղների հասունացումը։ Բացի դրանից, բնում մեկական բույս թողնելը հնարավորություն է տալիս բերքահավաքը կատարել մեքենայով։ Նոսրացումը պետք է կատարվի բամբակենու շաքիլային տերևները երևալուց հետո, այն էլ մեկ անգամ, եթե տվյալ հողամասը վարակված չէ հիվանդություններով և վնասատուներով։ Երկրորդ նոսրացումը պետք է կատարել, երբ երևում են 2—3 իսկական տերևներ։ Բամբակենու խնամքի գործում նոսրացումը համարվում է ամենապատասխանատու աշխատանքներից մեկը, ուստի այն պետք է կատարվի ագրոնոմի կամ բրիգադիրի հսկողության տակ։ Միջշարքային և միջբնային մշակության կարևորությունը և նշանակությունը հայտնի են կոլտնտեսականներին։ Այստեղ պետք է նըշել, որ միջշարքային տարածության մեջ փխրեցվող շերտի լայնությունը պետք է լինի 45 սանտիմետրից ոչ պակաս, դա հնարավորություն կտա ավելի կարճ ժամանակում և քիչ ուժերով ավարտել միջբնային տարածության մշակությունը, իսկ այդ հանգամանքը պայմաններ է ստեղծում բամբակենու արագ զարգացման համար, բարձր բերք ստանա-

լու համար։ Միջբնային մշակությունը չպետք է հետ մնա միջշարքային տարածության մշակությունից, այլ անմիջապես պետք է հաջորդի նրան։ Առանձնապես ուշադիր կերպով պետք է քաղհանել այն հողամասերը, որտեղ նախատեսված է բերքահավաքը կատարել մեքենայով, քանի որ մոլախոտերը խիստ կերպով խանգարում են մեքենայի բանող մասերին, ըստ որում իջնում է մեքենայի արտադրողականությունը և ավելանում թափվող հումքի քանակը։ Չափազանց կարևոր է, որ առաջին կուլտիվացիան կատարվի վաղ, ծիլերի երևալու հետ միասին։ Դրա առավելությունն այն է, որ մոլախոտերի արմատները չեն տարածվի խորը, հողում պահպանվում է խոնավությունը, մատղաշ ծիլերը և հետագայում զարգացող բույսերը, նորմալ կերպով սնվելով, կարտադրեն մեծ քանակությամբ պտղաօրգաններ, կարագացվի հասունացումը և կբարձրանա բերքը։ Առաջին կուլտիվացիան առանձնակի նշանակություն է ձեռք բերում, երբ նա կատարվում է վաղ։ Հաճախակի տեղումների ժամանակ, նախ ջրառատ հողերում, վաղ կուլտիվացիան նպաստում է տաքության և օդի ներթափանցմանը հողի մեջ և արագացնում հողի մեջ կատարվող միկրոբիոլոգիական



պրոցեսները, որի հետևանքով հողում կուտակվում են անհրաժեշտ քանակությամբ դյուրամարս սննդանյութեր։ Ջրելուց հետո, միջշարքային մշակության ուշացման դեպքում, առաջանում են կոշտեր, հողը ժամանակից շուտ կորցնում է խոնավությունը, որի հետևանքով բույսերը դադարում են նորմալ սնվելուց, հասունացման շրջանը երկարում է և ի վերջո ընկնում է բերքի քանակը և որակը։ Առավելապես անբարենպաստ տարիներին, երբ խոնավությունը առատ է, իսկ ջերմությունը ցածր, որի հետևանքով բամբակենին հետ է մնում իր զարգացման մեջ, ավելի քան կարևոր նշանակություն են ձեռք բերում հաճախակի և որակով կատարած մշակությունները, ուժեղ պայքարը վնասատուների դեմ և վաղ անուցումը։

Կուլտիվացիայի քանակը որոշվում է տեղում յուրաքանչյուր հողամասի համար առանձին։ Շատ հաճախ կուլտիվացիան կատարում են մակերեսում 30 սմ. նեղ շերտում։ Այդպիսի կուլտիվացիան ջրելուց հետո բացասական արդյունք է տալիս, քանի որ ավելացնում է մոլախոտերի քանակը և չի պահպանում խոնավությունը հողի ըստորին շերտերում, որը և տանում է դեպի բերքի իջեցում։ Քանի դեռ բամբակենին

փոքր է և արմատները դեռ չեն խորացել, կուլտիվացիան պետք է կատարել 8—10 սմ. խորությամբ։ Իսկ հետագա մյուս կուլտիվացիաները պետք է կատարել խոր՝ 14—16 սմ. արմատի միջին բանող մասերի նկատմամբ և 10—12 սմ. արմատի ծայրի նկատմամբ։

Սովետական պրակտիկան ցույց է տալիս, որ բոլոր պայմաններում էլ կարելի է բամբակի բարձր բերք ստանալ, եթե աշխատանքի կազմակերպումը, ագրոտեխնիկան դրված են բարձր հիմքերի վրա։ Այսպես, օրինակ, Էջմիածնի շրջանի Փարաքար գյուղի ընկ. Միկոյանի անվան կոլտնտեսությունը և ուրիշ կոլտնտեսություններ 1951 թվականի աշնան անբարենպաստ պայմաններում գերակատարեցին բամբակի բերքատվության պլանը և դրանով ապացուցեցին, որ ոչ մի արգելք չի կարող խանգարել 1952 թվականը բամբակի բարձր և կայուն բերքի տարի դարձնելու ընդհանուր նպատակի իրագործմանը։

ԳՐ. ԹՈՒՄԱՆՅԱՆ
Գյուղատնտեսական գիտությունների թեկնածու

ՄԵԹՈԴԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

## ԱԳԻՏԱՑԻԱՆ ԴԱՇՏՈՒՄ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻ ՇՐՋԱՆՈՒՄ

Ռեսպուբլիկայի բոլոր շրջաններում չթուլացող թափով շարունակվում են գյուղատնտեսական դաշտային աշխատանքները։ Դաշտ են դուրս եկել կոլտնտեսականները, սովխոզների աշխատողները, ՄՏ կայանների մեխանիզատորները։ Կոլտնտեսային գյուղի բոլոր աշխատավորներն իրենց ուժերն ու հնարավորությունները տրամադրել են այս տարվա գյուղատնտեսական աշխատանքները հաջողությամբ ավարտելու, 1952 թվականը կայուն ու բարձր բերքի տարի դարձնելու ընդհանուր նպատակի կենսագործմանը։

Գյուղատնտեսության աշխատողներին դաշտային աշխատանքների շրջանում օժանդակելու, նրանց աշխատանքային խանդավառությունը գլխավորելու, քաղաքական ակտիվությունը է՛լ ավելի բարձրացնելու գործում պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ շնորհակալ դեր ունեն կատարելու ագիտատորները։

Ագիտատորների խնդիրն է բավարարել աշխատավորների հետաքրքրությունը, կապել նրանց մեր մեծ Միության ժողովուրդների ընդհանուր կյանքի հետ, հաղորդակից դարձնել այն բոլոր իրադարձություններին, որ տեղի են ունենում մեր երկրում ու նրա սահմաններից դուրս։

Աշխատավորության շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի ելակետը պարտիայի ու Կառավարության որոշումներն են, ընկեր Ստալինի զեկուցումները, ճառերը, ցուցումները, ղեկավար ընկերների ելույթները։ Նրանցում են առաջին հերթին դրսևորվում սովետական ժողովրդի կենսական շահերը, ձգտումները, մեր երկրի հեռանկարները, պարտիայի ու կառավարության քաղաքականությունը՝ ներքին ու արտաքին հարցերում։

Պարտիայի ու կառավարության որոշումների, հաղորդագրությունների, ինչպես նաև համընդհանուր բնույթ կրող այլ հարցերի մասսայականացումը առավել հաջողությամբ կազմակերպելու համար, անհրաժեշտ է, որ ագիտատորներն իրենք առաջին հերթին լավ ուսումնասիրեն այդ նյութերը։ Ագիտկոլեկտիվում անհրաժեշտ պարզաբանումներ և ցուցումներ ստանալուց հետո,



ագիտատորները անպայման ինքնուրույնաբար պետք է ուսումնասիրեն պարապմունքի թեման, նշեն ընթերցանության նյութերի, զրույցների հարցերի հաջորդականությունը և ըստ այնմ կազմեն պարապմունքների պլանը։

Համապետական հարցերի, հաղորդագրությունների և ղեկավար ընկերների ելույթների մասսայականացումը պետք է կատարվի ագիտացիոն պարապմունքի ակտիվ մեթոդով, այն հաշվով, որ ունկնդիրները հնարավորություն ունենան արտահայտել իրենց մտքերը, զգացմունքները։ Մեր երկրի մարդիկ պարտիայի ու կառավարության ամեն մի միջոցառման, ընկեր Ստալինի ամեն մի ելույթի նկատմամբ իրենց քաղաքական ակտիվությունը արտահայտում են արտադրական խանդավառությամբ։ Գյուղատնտեսական դաշտային աշխատանքների շրջանում ագիտատորների խնդիրն է՝ դաշտում աշխատողների մոտ առաջացած այդ խանդավառությունը ուղղել իրենց կոլեկտիվի առջև դրված խնդիրների կատարմանը։

Չափազանց լայն է սովետական մարդկանց հետաքրքրող հարցերի շրջանը։ Նրանք ցանկանում են տեղյակ լինել մեր Մեծ Միության մեջ կատարվող աշխատանքային

իրագործումյուններին, կոմունիզմի մեծ կառուցումների շինարարության ընթացքին, ժողովրդական դեմոկրատիայի երկրների հաջողություններին։ Մեր երկրի մարդիկ հավասար հետաքրքրություն են հանդես բերում Սովետական Միության կողմից գլխավորվող սոցիալիզմի, դեմոկրատիայի լագերի ուժերի աճման, ամերիկյան իմպերիալիզմի կողմից գլխավորվող ռեակցիայի լագերի նոր պատերազմի նախապատրաստության դեմ, աշխատավորության կենսամակարդակի, դեմոկրատական իրավունքների ոտնահարման դեմ աշխարհի ժողովուրդների օրավուր աճող պայքարի փաստերի նկատմամբ։

Դաշտում աշխատողների հետաքրքրությունը առավել հաջողությամբ բավարարելու համար, անհրաժեշտ է, որ ագիտատորներն իրենք առաջին հերթին կապված լինեն մեր ամենօրյա մամուլի, ռադիոհաղորդումների հետ։ Ընթերցեն, ուսումնասիրեն, դասակարգեն հրապարակված նյութերը, նրանցից առավել կարևորներն ու հետաքրքիրները նախապատրաստեն կոլեկտիվ ընթերցանության, կամ նրանց բովանդակությունը զրույցների միջոցով հասցնեն ունկնդիրներին։



Մամուլի միջոցով աշխատավորության շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի բազմազան ձևեր կան։ Դրանց մեջ՝ դաշտային աշխատանքների շրջանում, առանձնակի կարևորություն է ստանում թերթը, գիրքը դաշտում աշխատողներին հասցնելու գործը։ Չի կարելի հանդուրժել, որ ամբողջ օրը դաշտում անցկացնող աշխատավորը կտրված մնա մամուլից։ Ագիտատորները առանձին ջանացողությամբ պետք է կազմակերպեն թերթերը անընդմեջ դաշտ տեղափոխելու աշխատանքը, նախաձեռնեն շրջիկ գրադարաններ կազմակերպելու գործը։

Գյուղատնտեսական դաշտային աշխատանքների շրջանում մասսայական-բացատրական աշխատանքներում մեծ տեղ պետք է գրավի սովետական առաջավոր ագրոբիոլոգիայի հիմունքների մասսայականացումն ու արմատավորումը։ Ագիտացիոն պարապմունքների ժամանակ խոսելով ցանքերի մշակության ագրոկանոնների մասին, ագիտատորներն անպայման պետք է ցույց տան, թե իրենց կոլեկտիվներում ինչպես են կիրառվում այդ կանոնները, ցուցադրեն այդ ուղղությամբ աշխատանքի լավագույն օրի-

նակները, քննադատեն ամեն մի անորակ աշխատանք։

Գյուղատնտեսական կուլտուրաների մըշակության շրջանում նոր թափ պետք է հաղորդել գյուղատնտեսության առաջավորների, Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների փորձի, աշխատանքում գործադրած մեթոդների մասսայականացման և արմատավորման աշխատանքներին։ Ագիտացիոն աշխատանքի միջոցով բոլորի սեփականությունը պետք է դարձնել աշխատանքում գործադրած այն ամեն լավը, որ կնպաստի գյուղատնտեսական կուլտուրաները անկորուստ ու ժամանակին աճեցնելու գործին։

Սոցիալիստական գյուղատնտեսության առաջավորների փորձը դաշտային աշխատանքների շրջանում մասսայականացնելու և արմատավորելու բոլոր եղանակների մեջ առանձնապես կարևոր է կազմակերպել առաջավորների, Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների ելույթները ունկնդիրների առջև։ Ագիտացիոն պարապմունքի ժամին առաջավորները ունկնդիրներին պետք է պատմեն իրենց գործադրած մեթոդների, դրա շնորհիվ ձեռք բերած նվաճումների մասին։ Ճիշտ են վարվում մի շարք կոլտնտեսությունների պարտկազմակերպությունների ագիտատորներ, երբ ագիտացիոն պարապմունքները հաճախ կազմակերպում են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներին ամրացված հողամասերում։ Ունկնդիրները այնտեղ լսում են գյուղատնտեսության առաջավորներին, տեսնում նրանց աշխատանքը, աշխատանքի արդյունքները։



Դաշտային աշխատանքների շրջանում սոցիալիստական մրցության կազմակերպումը սպարտիական կազմակերպությունների ագիտատորների առաջնահերթ խնդիրներից մեկն է։ Ագիտատորները նախ գործոն մասնակցություն պետք է ունենան սոցիալիստական մրցության պայմանագրերի կնքման աշխատանքներին, ձգտելով, որ ոչ ոք չմնա առանց մրցության պայմանագրի, և որ գըլխավորն է՝ դաշտում աշխատողները սահմանված նորմաները գերակատարելու համար մրցեն միմյանց հետ։ Այնուհետև ագիտատորների խնդիրը պետք է լինի հետևել մըրցության ընթացքին, պարապմունքների ժամանակ հրապարակել մրցության արդյունքները, խրախուսել առաջավորներին, կազմակերպել հետ մնացողների օգնության գործը, ստեղծել մասսայական արտադրական վերելք։

Քաղաքական-մասսայական աշխատանքում ագիտատորը չպետք է անցնի դաշտային աշխատանքների թերությունների կողքից: Ընդհակառակը, ագիտատորը պետք է առաջինը նկատի թերությունները, ուսումնասիրի թերությունների առաջացման պատճառները, նրանց վերացման ուղիները: Ագիտացիոն պարապմունքների ժամանակ պետք է ակտիվ քննարկման ենթարկել հանրային սեփականությունը շռայլելու, վատնելու ամեն մի երևույթ, հասարակական պարսավանքի ենթարկել հանրային սեփականության չարաշահումների նկատմամբ անտարբեր վերաբերվողներին: Դրա հետ միաժամանակ պետք է քննադատել սոցիալիստական համակեցության, աշխատանքային կարգապահության խախտման ամեն մի երևույթ, սովետական մարդկանց դաստիարակել դեպի աշխատանքը կոմունիստական վերաբերմունքի ոգով:

---

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ

# ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԹՈՒՆԻՍՈՒՄ

Աֆրիկայի ժողովուրդների օրեցօր բորբոքվող ազգային-ազատագրական պայքարը վերջերս մի առանձին ուժով ընդգրկել է Թունիսը:

Թունիսը ֆրանսիական գաղութ է, որը գտնվում է Աֆրիկայի հյուսիսային ծայրում: Թունիսի տերիտորիան խորը կերպով տարածվում է դեպի Միջերկրական ծովը և իտալական Սիցիլիա կղզուց բաժանված է Թունիսի՝ 145 կիլոմետր լայնություն ունեցող նեղուցով: Թունիսը արևմուտքից սահմանակից է ֆրանսիական գաղութ Ալժիրին, իսկ հարավ-արևելքից՝ Լիվիա պետությանը: Թունիսի տարածությունը կազմում է 156 քառակուսի կիլոմետր (որը մեծ է Հունաստանի տերիտորիայից): Բնակչության թիվը, որ կազմված է գլխավորապես բերբերներից և արաբներից, հասնում է ավելի քան 3 միլիոնի:

1881 թվականին ֆրանսիական զորքերը, Թունիսի ցեղերից մեկի «խաղաղեցման» պատրվակով, ներխուժեցին երկիրը և նրա— Թունիսի ժառանգական կառավարողի— վզին փաթաթեցին պրոտեկտորատի (հովանավորության) ստրկացուցիչ պայմանագիրը: Ըստ պայմանագրի՝ ձևականորեն իշխանությունը պահպանվում էր Բեյի ձեռքում: Սակայն փաստորեն այդ ժա-

մանկվանից սկսած երկիրը ղեկավարում է ֆրանսիական կառավարության կողմից նշանակվող գլխավոր ռեզիդենտը։

Ֆրանսիական գաղութարարների տիրապետությունը անհամար աղետներ ու տառապանքներ բերեց Թունիսի ժողովրդին։ Ամենադաժան շահագործում, չնչին աշխատավարձ, մասսայական գործազրկություն, նվազագույն իրավունքների և ազատությունների բացակայություն՝ ահա Թունիսի աշխատավորների բաժինը։ Աշխատավորների մեծամասնությունը պատսպարվում է թիթեղի և ֆաների կտորներից իրար կպցրած խղճուկ տնակներում, ծղոտե քոլիկներում կամ գետնափոր տներում։ Գաղութարարները թալանել են Թունիսի գյուղացիներին։ Ֆրանսիական չորս հազար հողատերեր զավթել են 800 հազար հեկտար ամենաբերրի հողերը։ Պաշտոնական տվյալների համաձայն՝ Թունիսի բնակչության 65 տոկոսը տառապում է մըշտական թերասնությունից։

Երկրում լայնորեն տարածված են տուբերկուլյոզը, աչքացավը և մյուս հիվանդությունները։ Սակայն իշխանությունները նույնիսկ փորձ չեն անում պայքարելու հիվանդությունների դեմ։ Թունիսում հազար մարդուն ընկնում է մեկ հիվանդանոցային մահճակալ և 15 հազար բնակչին՝ մեկ բժիշկ։ Թունիսցիների առջև փակ են կրթության դռները։ Դպրոցական հասակի երեխաների միայն 13 տոկոսը հնարավորու-



թյուն ունի դպրոց հաճախելու։ Թունիսի բնակչության ճնշող մեծամասնությունն անգրագետ է։

Երկրի ժողովրդական տնտեսության մեջ տերն ու տնօրենն են ֆրանսիական բանկերն ու կոմպանիաները, որոնք հսկայական շահույթներ են ստանում Թունիսի ազգային հարստությունների հափշտակման և էժան բանվորական ուժի անլուր շահագործման հաշվին։ Երկրում վերջին տարիները գնալով ավելի մեծ դեր է խաղում ամերիկյան կապիտալը։

Թունիսի նկատմամբ ամերիկյան իմպերիալիստների ցուցաբերած հետաքրքրությունը միայն հարստություն դիզելու ձգտումով չի բացատրվում։ Թունիսն արագորեն վեր է ածվում ԱՄՆ-ի ռազմական բազայի՝ Միջերկրական ծովում։ Ամերիկյան «մասնագետները» շուտափույթ ձևով աերոդրոմներ, ռազմամթերքի պահեստներ են կառուցում Թունիսում։ Խոշոր աշխատանքներ են տարվում Բիզերտա նավահանգստում։

Թունիսի ժողովուրդը երբեք չի հաշտվել գաղութային ճնշման հետ։ Այդ մասին կարելի է դատել թեկուզ հետևյալ փաստով. ֆրանսիական տիրապետության 70 տարվա ընթացքում երկիրը 25 տարի գտնվել է պաշարողական դրության մեջ։ Պաշարողական դրությունը շարունակվում է և այժմ։

Սակայն ֆրանսիական իշխանությունների տեռորը չի կարող մարել ազգային-ազատագրական պայքարի բոցը, որն առանձին ուժով բորբոքվել է երկրորդ համաշխարհային պատերազմից հետո։ Ֆաշիզմի դեմ

Սովետական Միության տարած մեծ հաղթանակը, Չինաստանի ազատագրումը, Արևելքի ժողովուրդների հաջող պայքարը իրենց ճնշողների դեմ՝ ահա թե որոնք են ազգային շարժման այն հսկայական վերելքի պատճառները, որ ներկայումս մենք տեսնում ենք Թունիսում։

Կատարելով իրենց անդրօվկիանոսային տերերի հրամանը, ֆրանսիական կառավարությունը գործի է դնում բոլոր միջոցները, որպեսզի խեղդի ազգային-ազատագրական շարժումը, որն սպառնում է վիժեցնել պատերազմի հրձիգների պլաններն այդ շրջանում։ Չսահմանափակվելով արյունալի դատաստաններով, ֆրանսիական գաղութարարները ձգտում են պառակտել ազգային-ազատագրական պայքարի ճակատը։ Նրանք փորձում են ռեֆորմների և մանր զիջումների խոստումներով հրապուրել Թունիսի բուրժուազիային։ Բուրժուա-նացիոնալիստական «Նոր Դեստուր» պարտիայի ղեկավարները, վախենալով ազգային շարժման խիստ ուժեղ թափից, որոշեցին մտնել կառավարության մեջ, որը կազմել է Թունիսի քաղաքական գործիչ Շենիկը՝ 1950 թվականի օգոստոսին։ Շենիկն իր կաբինետն անվանեց «բանակցությունների կառավարություն»։ «Նոր Դեստուր» պարտիան, համաձայնելով պրոտեկտորատի երկարաձգմանը, պահանջեց, որ ընտրվի Թունիսի ազգային ասամբլեա և երկրի վարչական օրգանները հանձնվեն թունիսցիների ձեռքը։

Սակայն ֆրանսիական կառավարությունն իր 1951



թվականի դեկտեմբերի 15-ի նոտայում մերժեց «Նոր դեստուր» պարտիայի նույնիսկ այս երկչոտ պահանջները։ Ֆրանսիական կառավարության պատասխանը զայրույթ առաջ բերեց Թունիսի ժողովրդական ամենալայն մասսաների մեջ։ Ամբողջ երկրով մեկ գործադուլների, միտինգների, ցույցերի հուժկու ալիք ծավալվեց։ 1951 թվականի դեկտեմբերի վերջին տեղի ունեցած ընդհանուր գործադուլը ցույց տվեց Թունիսի ժողովրդի բացառիկ համախմբվածությունն ու կայունությունը իր ազատագրման համար մղվող պայքարում։

Ֆրանսիական իշխանությունները անզեն ցուցարարների դեմ դուրս բերեցին իրենց զորքերը և տանկերը։ Պատժիչները գնդակահարում էին բոլորովին անմեղ մարդկանց, թալանում և ոչնչացնում ամբողջ գյուղեր։ 20 հազար մարդկանց ֆրանսիական գաղութարարները նետեցին բանտերը և աքսորեցին։

«Նոր Դեստուր» պարտիան, վախենալով կորցնել մասսաների մեջ ունեցած իր ազդեցությունը, հրաժարվեց ընդունել դեկտեմբերի 15-ի նոտայում շարադրված պայմանները։ Այն ժամանակ ֆրանսիական կառավարությունը որոշեց գլխատել Թունիսի ազգային-ազատագրական շարժումը և բռնությամբ մտցնել իրեն ձեռնտու կարգերը։ Մարտի 26-ի գիշերը, ֆրանսիական ռեզիդենտ դե Օտկլոկի հրամանով, ձերբակալ-

վեցին պրեմյեր-մինիստր Շենիկը, նրա կաբինետի երեք մինիստրներ, ինչպես նաև կոմունիստական պարտիայի, «Նոր Դեստուր» և «Հին դեստուր» պարտիայի՝ մինչ այդ դեռ ազատության մեջ գտնվող ղեկավարները։ Նրանք բոլորն էլ աքսորվեցին ամենահեռավոր շրջանները։

Երկրում մտցվեց ամենադաժան ռեակցիա։ Թունիսի պրեմյեր-մինիստր նշանակվեց Սալախ-էդ-դին Բակուշը, «Թունիսի կվիսլինգը», ինչպես նրան անվանեց հնդկական մի թերթ։ Սալախ-էդ-դին Բակուշը հրապարակեց ֆրանսիական «ռեֆորմների պլանը», որից երևում է, որ գաղութարարները մտադիր չեն թուլացնելու Թունիսում իրենց մտցրած ճնշման և իրավազրկության ռեժիմը։

Թունիսի կառավարության անդամների և մի քանի պարտիաների ղեկավարների նկատմամբ ֆրանսիական ռեզիդենտ դե Օտկլոկի կատարած դատաստանը զայրույթ ու ցասում առաջ բերեց ամբողջ համաշխարհային հասարակայնության կողմից։ Պակիստանի, Հնդկաստանի, Իրանի, Ավղանիստանի և մի շարք այլ երկրների ներկայացուցիչները Թունիսի հարցը քննության դրին Միավորված Ազգերի կազմակերպության Անվտանգության խորհրդում։ Սակայն ԱՄՆ-ը, Անգլիան և Ֆրանսիան վիժեցրին Թունիսում տիրող դրության հարցի քննարկումը, թույլ չտալով այն մտցնելու



Անվտանգության խորհրդի օրակարգում։ ԱՄՆ-ի այդ դիրքի պատճառը վերջերս արտահայտեց ամերիկյան «Գլոբ» թերթը։ «Թունիսում տիրող ճգնաժամը,— գրել է այդ թերթը,— ձեռք է բերում չափազանց կարևոր նշանակություն, եթե հաշվի առնենք այդ երկրի ստրատեգիական դիրքը Միջերկրական ծովում»։

Սակայն Թունիսի ժողովուրդը, որ շարունակում է իր հերոսական պայքարը, կհասնի իր օրինական պահանջների կենսագործմանը։

Այդ պայքարում չափազանց կարևոր դեր է խաղում բանվոր դասակարգը, որին ղեկավարում է կոմունիստական պարտիան։ Կոմունիստական պարտիան պահանջում է լիակատար գոհացում տալ Թունիսի ժողովրդի իղձերին, այն է՝ վերջնականապես վերացնել պրոտեկտորատը, ստեղծել Թունիսի ազատորեն ընտրված Ազգային ժողով և կառավարություն, հաստատել դեմոկրատական ազատություններ։ Գաղութային տիրապետության դեմ ակտիվորեն հանդես է գալիս քայքայման և սնանկացման մատնված մանր բուրժուազիան, ինչպես նաև գաղութարարների կողմից կողոպտված գյուղացիությունը։

Այդ պայքարում կազմավորվում են նոր փոխհարաբերություններ։ Անկախության պայքարի միասնական հակաիմպերիալիստական ազգային ճակատ ստեղծելու գաղափարը, որի ստեղծմանը ձգտում է

Թունիսի կոմպարտիան՝ սկսած 1946 թվականից, ավելի ու ավելի լայն արձագանք է գտնում մասսաների մեջ։ Այդ է վկայում, մասնավորապես, այն միահամուռ համերաշխությունը, որով ապրիլի 1-ից անցկացվեց բողոքի ընդհանուր գործադուլը ընդդեմ գաղութարարների կամայականության։ Չնայած արյունալի տեռորին, երկրի շատ վայրերում շարունակվում են գործադուլներն ու ցույցերը։

Թունիսի ժողովրդի արդարացի ազատագրական պայքարը համակրանք և պաշտպանություն է գտնում ամբողջ աշխարհի աշխատավորների, այդ թվում և Ֆրանսիայի աշխատավորների կողմից։ Թունիսում 1952 թվականի մարտի 26-ին հրապարակած հայտարարության մեջ ֆրանսիական կոմունիստական պարտիան նշում է, որ նա ողջունում է Թունիսի ժողովրդի պանծալի պայքարը և հայտարարում, որ Ֆրանսիայի բանվոր դասակարգը և ժողովուրդը լիովին համերաշխ են Թունիսի ժողովրդի հետ։

Ն. ԳԱԼՈՎ

---

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ՊԱՅՔԱՐԵՆՔ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԵՏԱԳԱ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՀԱՄԱՐ

1. Գյուղատնտեսական արտելի Կանոնադրության անշեղ կենսագործումը գյուղատնտեսության բոլոր բնագավառներում աշխատողների պարտականությունն է։

2. Գյուղատնտեսական արտելի Կանոնադրության հիմքը կոլտնտեսականների անձնական շահերը կոլտնտեսության հանրային շահերի հետ զուգակցելու սկզբունքն է։

3. Հանրային սեփականությունը ավելացնելը և պահպանելը կոլտնտեսությունը կազմակերպորեն-տնտեսապես ամրապնդելու հիմնական պայմանն է։

4. Կոլտնտեսային ունեցվածքը շռայլելը, հափշտակելը ծանր հանցագործություն է, որ հետապնդվում է օրենքով։

5. Աշխատանքային բարձր կարգապահությունը, կոլտնտեսության ժողովների, վարչության նիստերի

*որոշումների անշեղ կենսագործումը բոլոր կոլտնտեսականների պարտականությունն է։*

*6. Սովետական առաջավոր ագրոբիոլոգիայի հիմունքների, կոլտնտեսության առաջավորների փորձի մասսայականացումը և արմատավորումը 1952 թվականին կայուն և բարձր բերք ստանալու երաշխիքներն են։*

*7. Ծավալենք սոցիալիստական մրցությունը մեր կոլտնտեսության առջև դրված խնդիրները ժամանակին կատարելու համար։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1946 թ. սեպտեմբերի 19-ի որոշումը «Կոլտնտեսություններում Գյուղատնտեսական արտելի Կանոնադրության խախտումները վերացնելու միջոցառումների մասին»։

ԳՐ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ.— Հաշվետու զեկուցում ՀԿ(բ)Պ 15-րդ համագումարում, ՀԿ(բ)Պ Կենտկոմի աշխատանքի մասին։ *Հայպետհրատ, առանձին բրոշյուրով։*

Գյուղատնտեսական արտելի օրինակելի Կանոնադրությունը։

«Կոլտնտեսությունների կազմակերպական-տնտեսական հետագա ամրապնդման համար»։ *«Ս. Հ.» 1952 թվականի մայիսի 15-ի առաջնորդողը։*



## *2. ԾԱՎԱԼԵՆՔ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ 1952 ԹՎԱԿԱՆԻ ԱՌԱՋԻՆ ԿԻՍԱՄՅԱԿԻ ՊԼԱՆԸ ԳԵՐԱԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ.*

*1. Արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ ներդրված մեքենաները և գազգահները արտադրական լրիվ կարողությամբ օգտագործելը պլանների գերակատարման կարևորագույն երաշխիքն է։*

*2. Արտադրության առաջավորների փորձի մասսայականացումը, աշխատանքում գործադրած մեթոդների արմատավորումը աշխատանքի արտադրողականության բարձրացման լավագույն միջոցն է։*

*3. Խնայենք հումքը, էլեկտրաէներգիան, վառելիքը, խնայողության հաշվին տանք լրացուցիչ արտադրանք։*

*4. Աշխատանքի արտադրողականության բարձրացումը պլանների գերակատարման հիմնական պայմանն է։*

*5. Միայն բարձրորակ արտադրանքի թողարկումը բոլոր բանվորների ու բանվորուհիների հայրենասիրական պարտքն է։*

*6. Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքը սովետական մարդկանց բարձր հատկությունն է։*

*7. Պարտիայի և կառավարության որոշումներին, նախաձեռնություններին, աշխատավորության նկատմամբ ընկեր Ստալինի ցուցաբերած հոգատարությանը պատասխանենք արտադրական վերելքով։*

8. Ինչպես են մեր կոլեկտիվում կատարվում սոցիալիստական մրցության պարտավորությունները՝ 1952 թվականի առաջին կիսամյակի պլանները գերակատարելու համար։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— «Մրցությունը և աշխատավորների աշխատանքային վերելքը», *Երկեր, հատոր 12, էջ 122—126։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ՝ արտասանած ստախանովականների համամիութենական առաջին խորհրդակցությանը։ *«Լենինիզմի հարցերը», 11-րդ հրատ., էջ 602—617, Հայպետհրատ.։*

«Ժողովրդական տնտեսության նոր, հզոր վերելքի համար», *«Ս. Հ.» 1952 թ., մարտի 12-ի առաջնորդողը։*

«Կոլտնտեսային աշխատավորների սոցիալիստական մրցությունը», *«Ս. Հ.» 1952 թ., մարտի 15-ի առաջնորդողը։*


## *3. ԱՃՈՒՄ ՈՒ ԱՄՐԱՊՆԴՎՈՒՄ ԵՆ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՃԱԿԱՏԻ ՈՒԺԵՐԸ*

*1. Ընկեր Ստալինը ամբողջ աշխարհի աշխատավորների կողմից խաղաղության համար մղվող պայքարի կազմակերպիչն ու ոգեշնչողն է։*

*2. Սովետական Միության տնտեսական-քաղաքական հաջողությունները ամբողջ աշխարհում երկարա-*



*տև ու կայուն խաղաղություն պահպանելու լավագույն երաշխիքներն են։*

*3. Սովետական Միության անշահախնդիր, եղբայրական օգնության շնորհիվ ժողովրդական դեմոկրատիայի երկրներում ձեռք բերված հաջողությունները ամրապնդում են ժողովուրդների միջև խաղաղության պահպանման գործը։*

*4. Բոլոր երկրների կոմունիստական պարտիաները խաղաղության համար մղվող պայքարի կազմակերպիչներն ու ոգեշնչողներն են։*

*5. Գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների օրեցօր աճող պայքարը հանուն ազատության, անկախության, դեմոկրատիայի՝ խարխլում է ամերիկյան իմպերիալիզմի կողմից գլխավորվող պատերազմի ճակատը։*

*6. Իմպերիալիստական պետությունների աշխատավորները դեմ են պատերազմի նախապատրաստվելու իրենց կառավարությունների վարած քաղաքականությանը։*

*7. Աշխատանքային նորանոր հաջողություններով էլ ավելի ամրապնդենք մեր Հայրենիքի հզորությունը, ամբողջ աշխարհում խաղաղության պահպանության անխորտակելի ամրոցը։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Զրույց «Պրավդա»-ի թղթակցի հետ։ *Հայպետհրատ, 1951 թ., առանձին բրոշյուրով։*

Ընկեր Ստալինի պատասխանը ամերիկյան թերթերի մի խումբ խմբագիրների հարցերին: *«Ագիտատորի բլոկնոտ» № 7, 1952 թ.:*

Օրենք՝ խաղաղության պաշտպանության մասին: *«Ս. Հ.» 1951 թ. մարտի 14-ի համարում:*

«Սովետական Միությունը հետևողականորեն վարել ու վարում է խաղաղասիրական քաղաքականություն»: *«Ագիտատորի բլոկնոտ № 9, 1952 թ.:*

«Ազատ ժողովուրդների բարեկամությունը և փոխօգնությունը»: *«Պրավդա»-ի 1952 թ. հունվարի 24-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.» 1952 թ. հունվարի 25-ի համարում:*

«Գերմանիայի հետ հաշտության պայմանագրի համար»: *«Պրավդա»-ի մարտի 12-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.» 1952 թ. մարտի 13-ի համարում:*

Պատ. խմբագրի տեղակալ՝ Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении

**БЛОКНОТ АГИТАТОРА**

№ 10 1952 г.

*ՎՖ 03957 Պատվեր № 492 Տիրաժ 10.000*

*Հայպոլիգրաֆհրատի II տպարան, Երևան, Կնունյանցի փ. № 8*